Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ



# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 6 (49)

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ» ԹԵՐԹԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
1946

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

Հ Կ (բ) Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 6 (49)

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ» ԹԵՐԹԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
1946

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

1. Ընկ. Ի. Վ. ՍՏԱԼԻՆԻ ինտերվյուն «Պրավդայի» թղթակցի հետ պ-ն Չերչիլլի ճառի վերաբերյալ . . . 3
2. Գարնանացանը և ագիտատորը . 19
3. Գ. ԱՂԱՋԱՆՅԱՆ.—Գարնանացանը անցկացնել ագրոտեխնիկայի պահանջներին համապատասխան 23
4. Բ. ՇԱՀՈՒՄՅԱՆ.—Բարձր արտադրանքի վարպետները . . . . . 33
5. Ի՞նչ կարդալ . . . . . . . . 37
6. Մեր բառարանը . . . . . . 40

Խմբագրության հասցեն.—Երևան, Նալբանդյան 32, ՀԿ(բ)Պ Կենտկոմի Պրոպագանդայի և Ագիտացիայի բաժին, հեռ. 12—45:

# ԸՆԿ. Ի. Վ. ՍՏԱԼԻՆԻ ԻՆՏԵՐՎՅՈՒՆ «ՊՐԱՎԴԱՅԻ» ԹՂԹԱԿՑԻ ՀԵՏ Պ-ՆԻ ՉԵՐՉԻԼԼԻ ՃԱՌԻ ՎԵՐԱԲԵՐՅԱԼ

*Օրերս «Պրավդայի» թղթակիցներից մեկը դիմեց ընկ. Ստալինին, խնդրելով պարզաբանել պ-ն Չերչիլլի ճառի հետ կապված մի շարք հարցեր: Ընկ. Ստալինը համապատասխան պարզաբանումներ տվեց, որոնք բերվում են ստորև, թղթակցի հարցերին տրված պատասխանների ձևով:*

*ՀԱՐՑ. Ի՞նչպես եք Դուք գնահատում Ամերիկայի Միացյալ Նահանգներում պ-ն Չերչիլլի արտասանած վերջին ճառը:*

*ՊԱՏԱՍԽԱՆ. Ես այն գնահատում եմ որպես մի վտանգավոր ակտ, որի նպատակն է երկպառակություն սերմանել դաշնակից պետությունների միջև և դժվարացնել նրանց համագործակցությունը:*

*ՀԱՐՑ. Կարելի՞ է արդյոք համարել, որ*

պ-րն Չերչիլլի ճառը վնաս է պատճառում խաղաղության և անվտանգության գործին:

ՊԱՏԱՍԽԱՆ. Անշուշտ, այո: Ըստ էության պ-րն Չերչիլլը այժմ կանգնած է պատերազմը հրահրողների դիրքում: Եվ պ-րն Չերչիլլը այստեղ մենակ չէ,—նա ունի բարեկամներ ոչ միայն Անգլիայում, այլև Ամերիկայի Միացյալ Նահանգներում:

Պետք է նշել, որ պ-րն Չերչիլլը և նրա բարեկամները այդ տեսակետից զարմանալի կերպով հիշեցնում են Հիտլերին և նրա բարեկամներին: Հիտլերը պատերազմը սանձազերծ անելու գործը սկսեց այն բանից, որ հռչակեց ռասսայական տեսությունը, հայտարարելով, որ միայն գերմաներեն լեզվով խոսող մարդիկ են ներկայացնում լիարժեք ազգ: Պ-րն Չերչիլլը պատերազմը սանձազերծ անելու գործը սկսում է նույնպես ռասսայական տեսությունից, պնդելով, որ միայն անգլերեն լեզվով խոսող ազգերն են հանդիսանում լիարժեք ազգեր, որոնք կոչված են տնօրինել ամբողջ աշխարհի բախտը: Գերմանական ռասսայական տեսությունը Հիտլերին և նրա բարեկամներին հանգեցրեց այն հետևության, որ գերմանացիները իբրև միակ լիարժեք ազգ պետք է տիրեն մյուս ազգե-



րին: Անգլիական ռասսայական տեսությունը պ-րն Չերչիլլին և նրա բարեկամներին հանգեցնում է այն հետևության, որ անգլերեն լեզվով խոսող ազգերը, որպես միակ լիարժեք ազգեր, պետք է տիրեն աշխարհի մնացած ազգերին:

Ըստ էության պ-րն Չերչիլլը և Անգլիայում ու ԱՄՆ-ում նրա բարեկամները անգլերեն չխոսող ազգերին ուլտիմատումի նման մի բան են ներկայացնում՝ ճանաչեցեք մեր տիրապետությունը կամավոր կերպով և այն ժամանակ ամեն ինչ կարգին կլինի, հակառակ դեպքում պատերազմը անխուսափելի է:

Բայց ազգերը դաժան պատերազմի հինգ տարվա ընթացքում արյուն են թափել իրենց երկրների ազատության և անկախության համար, այլ ոչ թե այն բանի համար, որ հիտլերների տիրապետությունը փոխարինվի չերչիլլների տիրապետությամբ: Այդ պատճառով միանգամայն հնարավոր է, որ անգլերեն լեզվով չխոսող և միաժամանակ աշխարհի բնակչության հսկայական մեծամասնությունը կազմող ազգերը չեն համաձայնվի նոր ստրկության մեջ ընկնել:

Պ-րն Չերչիլլի ողբերգությունն այն է, որ

նա որպես մոլեռանդ տորի չի հասկանում այդ պարզ և ակներև ճշմարտությունը։

Անկասկած՝ պ-րն Չերչիլլի դրույթը պատերազմի դրույթ է, ՍՍՌՄ-ի դեմ ուղղված պատերազմի կոչ։ Նույնպես պարզ է և այն, որ պ-րն Չերչիլլի նման դրույթը անհամատեղելի է Անգլիայի ու ՍՍՌՄ-ի միջև գոյություն ունեցող դաշնակցային պայմանագրի հետ։ Ճիշտ է, պ-րն Չերչիլլը ընթերցողներին շփոթեցնելու համար հարևանցիորեն հայտարարում է, որ փոխադարձ օգնության և համագործակցության սովետա-անգլիական պայմանագրի ժամկետը միանգամայն կարելի էր երկարաձգել 50 տարով, բայց ինչպես համատեղել պ-րն Չերչիլլի նման հայտարարությունը ՍՍՌՄ-ի դեմ ուղղված պատերազմի նրա դրույթի հետ, ՍՍՌՄ-ի դեմ ուղղված պատերազմի նրա քարոզի հետ։ Պարզ է, որ այդ բաները ոչ մի կերպ չի կարելի համատեղել։ Եվ եթե պ-րն Չերչիլլը, որը Սովետական Միության դեմ ուղղված պատերազմի կոչ է անում, միաժամանակ հնարավոր է համարում անգլո-սովետական պայմանագրի ժամկետը երկարաձգել 50 տարով, ապա այդ նշանակում է, որ նա այդ պայմանագիրը դիտում է որպես դա-



տարկ թուղթ, որը նրան միայն հարկավոր է, որպեսզի դրանով քողարկի և թաքցնի իր հակասովետական դրույթը։ Այդ պատճառով չի կարելի լուրջ կերպով վերաբերվել Անգլիայում պ-րն Չերչիլլի բարեկամների կեղծ հայտարարություններին սովետա-անգլիական պայմանագրի ժամկետը 50 և ավելի տարով երկարաձգելու մասին։ Պայմանագրի ժամկետը երկարաձգելը իմաստ չունի, եթե կողմերից մեկը պայմանագիրը խախտում է և այն վերածում դատարկ թղթի։

ՀԱՐՑ. Ինչպես եք Դուք գնահատում պ-րն Չերչիլլի ճառի այն մասը, որտեղ նա հարձակվում է մեզ հարևան եվրոպական պետությունների դեմոկրատական կարգի վրա և որտեղ նա քննադատում է այդ պետությունների և Սովետական Միության միջև հաստատված բարի դրացիական փոխհարաբերությունները։

ՊԱՏԱՍԽԱՆ. Պ-րն Չերչիլլի ճառի այդ մասը գրպարտության տարրերի խառնուրդ է կոպտության և անտակտության տարրերի հետ։

Պ-րն Չերչիլլը պնդում է, որ «Վարշավան, Բեռլինը, Պրագան, Վիեննան, Բուդապեշտը, Բելգրադը, Բուխարեստը, Սո-

ֆիան— այդ բոլոր նշանավոր քաղաքները և նրանց շրջանների բնակչությունը գտնըվում են սովետական սֆերայում և բոլորը, այս կամ այն ձևով, ենթարկվում են ոչ միայն սովետական ազդեցությանը, այլև Մոսկվայի զգալի չափով ուժեղացող վերահսկողությանը»: Պ-րն Չերչիլը այս բոլորը որակում է որպես Սովետական Միության սահմաններ չունեցող «էքսպանսիոնիստական տենդենցներ»:

Առանձին աշխատանք չի պահանջվում, որպեսզի ցույց տանք, թե պ-րն Չերչիլը կոպիտ և անզուսպ կերպով այստեղ զրպարտում է ինչպես Մոսկվային, այնպես և ՍՍՌՄ-ին հարևան հիշյալ պետություններին:

Նախ և առաջ. միանգամայն անհեթեթ բան է խոսել ՍՍՌՄ-ի բացառիկ վերահսկողության մասին Վիեննայում և Բեռլինում, որտեղ կան Դաշնակից Վերահսկիչ Խորհուրդներ՝ կազմված չորս պետությունների ներկայացուցիչներից և որտեղ ՍՍՌՄ-ն ունի ձայների միայն մեկ քառորդը: Պատահում են մարդիկ, որոնք չեն կարող չզրպարտել, բայց այնուամենայնիվ պետք է չափը գիտենալ:

Երկրորդ՝ չպետք է մոռանալ հետևյալ



հանգամանքը: Գերմանացիները ՍՍՌՄ ներխուժեցին Ֆինլանդիայի, Լեհաստանի, Ռումինիայի, Բուլղարիայի, Հունգարիայի վրայով: Գերմանացիները կարողացան այդ երկրների վրայով ներխուժել այն պատճառով, որ այդ երկրներում այն ժամանակ գոյություն ունեին Սովետական Միությանը թշնամի կառավարություններ: Գերմանական ներխուժման հետևանքով Սովետական Միությունը գերմանացիների դեմ մղված մարտերում, ինչպես նաև գերմանական օկուպացիայի և սովետական մարդկանց գերմանական տաժանակրության քշելու հետևանքով անդարձ կորցրեց մոտ յոթ միլիոն մարդ: Այլ կերպ ասած, Սովետական Միությունը մի քանի անգամ ավելի շատ մարդ է կորցրել, քան Անգլիան և Ամերիկայի Միացյալ Նահանգները միասին վերցրած: Հնարավոր է, որ տեղ-տեղ հակամետ են մոռացության տալ սովետական ժողովրդի այդ վիթխարի զոհաբերությունները, որոնք ապահովեցին Եվրոպայի ազատագրումը հիտլերյան լծից: Բայց Սովետական Միությունը չի կարող մոռանալ դրանք: Հարց է ծագում՝ զարմանալի ի՞նչ կարող է լինել այն բանում, որ Սովետական Միությունը, ցանկանալով ապագա-

յում ապահովել իր անվտանգությունը, աշխատում է ձգտել, որպեսզի այդ երկրներում գոյություն ունենան Սովետական Միությանը լոյալ վերաբերվող կառավարություններ։ Ինչպե՞ս կարելի է առանց խելքը կորցնելու Սովետական Միության այդ խաղաղ ձգտումները որակել որպես մեր պետության էքսպանսիոնիստական տենդենցներ։

Պ-ն Չերչիլլը այնուհետև պնդում է, որ «ռուսների տիրապետության տակ գտնվող լեհական կառավարությունը խրախուսվել է հսկայական և անարդարացի ոտնձգություններ կատարելու Գերմանիայի նկատմամբ»։

Այստեղ յուրաքանչյուր խոսքը կոպիտ և վիրավորական զրպարտություն է։ Ժամանակակից դեմոկրատական Լեհաստանը ղեկավարում են ականավոր մարդիկ։ Նրանք գործով ապացուցել են, որ գիտեն պաշտպանել իրենց հայրենիքի շահերն ու արժանապատվությունը այնպես, ինչպես այդ չգիտեին անել նրանց նախորդները։ Ի՞նչ հիմք ունի պ-ն Չերչիլլը պնդելու, որ ժամանակակից Լեհաստանի ղեկավարները կարող են իրենց երկրում թույլ տալ որևէ օտար պետության ներկայացուցիչների



«տիրապետություն»։ Արդյոք այստեղ պ-ն Չերչիլլը «ռուսներին» այն պատճառո՞վ չի զրպարտում, որ մտադրություն ունի երկպառակություն սերմանել Լեհաստանի և Սովետական Միության միջև եղած հարաբերությունների ասպարեզում...

Պ-ն Չերչիլլը դժգոհ է, որ Լեհաստանը իր քաղաքականության մեջ շրջադարձ է կատարել ՍՍՌՄ-ի հետ բարեկամության և դաշինքի կողմը։ Կար ժամանակ, երբ Լեհաստանի ու ՍՍՌՄ-ի միջև եղած փոխհարաբերություններում տիրապետում էին կոնֆլիկտների և հակասությունների տարրերը։ Այդ հանգամանքը պ-ն Չերչիլլի նման պետական գործիչներին հնարավորություն էր տալիս օգտագործելու այդ հակասությունները, ռուսներից պաշտպանելու պատրվակով Լեհաստանը իրեն ձեռքը հավաքելու, Ռուսաստանին՝ նրա ու Լեհաստանի միջև պատերազմի ուրվականով վախեցնելու և իրենց համար արբիտրի դիրքը վերապահելու։ Բայց այդ ժամանակն արդեն անցել է, որովհետև Լեհաստանի և Ռուսաստանի միջև եղած թշնամությունը իր տեղը զիջել է նրանց միջև եղած բարեկամությանը, իսկ Լեհաստանը, ժամանակակից դեմոկրատական Լեհաստանը, այլևս

չի ցանկանում օտարերկրացիների ձեռքում խաղալիք դառնալ։ Ինձ թվում է, որ հենց այս հանգամանքը պ-րն Չերչիլլին զայրացնում է և նրան դրդում է կոպիտ, անտակտ ելույթների ընդդեմ Լեհաստանի։ Կատա՞կ է արդյոք՝ նրան թույլ չեն տալիս խաղալ ուրիշի հաշվին...

Ինչ վերաբերում է պ-րն Չերչիլլի հարձակումներին Սովետական Միության վրա՝ Լեհաստանի արևմտյան սահմանները գերմանացիների կողմից անցյալում զավթված լեհական տերիտորիաների հաշվին ընդլայնելու կապակցությամբ, ապա այստեղ, ինչպես ինձ թվում է, նա ակնհայտորեն խաղաթղթերը կեղծում է։ Ինչպես հայտնի է, Լեհաստանի արևմտյան սահմանների վերաբերյալ որոշումը ընդունվել է երեք տերությունների Բեռլինի կոնֆերանսում Լեհաստանի պահանջների հիման վրա։ Սովետական Միությունը բազմիցս հայտարարել է, որ ինքը Լեհաստանի պահանջները համարում է ճիշտ և արդարացի։ Միանգամայն հավանական է, որ պ-րն Չերչիլլը այդ որոշումից դժգոհ է։ Բայց ինչո՞ւ պ-րն Չերչիլլը այդ հարցում ռուսների բռնած դիրքի դեմ ուղղված նետեր չխնայելով, իր ընթերցողներից թաքցնում



է այն փաստը, որ որոշումն ընդունվել է Բեռլինի կոնֆերանսում միաձայն, որ որոշման օգտին քվեարկել են ո՛չ միայն ռուսները, այլև անգլիացիներն ու ամերիկացիները։ Ինչի՞ համար է պ-րն Չերչիլլը կարիք զգացել մարդկանց մոլորության մեջ գցելու։

Պ-րն Չերչիլլը այնուհետև պնդում է, որ «կոմունիստական պարտիաները, որոնք շատ աննշան էին Եվրոպայի այդ բոլոր արևելյան պետություններում, բացառիկ ուժի են հասել, որը շատ է գերազանցում նրանց թվին, և ձգտում են ամենուրեք հաստատել տոտալիտար վերահսկողություն, ոստիկանական կառավարություններ են գերակշռում համարյա այդ բոլոր երկրներում և մինչև այժմ, բացառությամբ Չեխոսլովակիայի, այնտեղ գոյություն չունի ոչ մի իսկական դեմոկրատիա»։

Ինչպես հայտնի է, Անգլիայում այժմ պետությունը կառավարում է մեկ պարտիա, լեյբորիստների պարտիան, ընդ որում օպոզիցիոն պարտիաները զրկված են Անգլիայի կառավարությանը մասնակցելու իրավունքից։ Դա պ-րն Չերչիլլի մոտ կոչվում է իսկական դեմոկրատիզմ։ Լեհաստանում, Ռումինիայում, Հարավսլավիա-

յում, Բուլղարիայում, Հունգարիայում կառավարում է մի քանի պարտիաների, չորսից մինչև վեց պարտիաների բլոկը, ընդ որում օպոզիցիայի համար, եթե նա քիչ թե շատ լոյալ է, իրավունք է ապահովված մասնակցել կառավարությանը: Պ-րն Չերչիլլի մոտ դա կոչվում է տոտալիտարիզմ, բռնապետություն, ոստիկանական կամայականություն: Ինչո՞ւ, ի՞նչ հիման վրա,— պ-րն Չերչիլլից պատասխան չեք ստանա: Պ-րն Չերչիլլը չի հասկանում, թե ինչ ծիծաղելի դրության մեջ է դնում իրեն տոտալիտարիզմի, բռնապետության, ոստիկանական կամայականության վերաբերյալ իր ճղճղան ճառերով:

Պ-րն Չերչիլլը կցանկանար, որ Լեհաստանը կառավարեին Սոսնկովսկին ու Անդերսը, Հարավսլավիան՝ Միխայլովիչն ու Պավելիչը, Ռումինիան՝ իշխան Շտիրբեյն ու Ռադեսկուն, Հունգարիան ու Ավստրիան՝ Հաբսբուրգների հարստությանը պատկանող որևէ թագավոր և այլն: Պ-րն Չերչիլլը ցանկանում է մեզ հավատացնել, որ ֆաշիստական դարպասատակի այդ պարոնները կարող են ապահովել «իսկական դեմոկրատիզմ»: Ահա պ-րն Չերչիլլի «դեմոկրատիզմը»:



Պ-րն Չերչիլլը թափառում է ճշմարտության շուրջը, երբ նա խոսում է Արևելյան Եվրոպայում կոմունիստական պարտիաների ազդեցության աճման մասին: Սակայն պետք է նկատել, որ նա ոչ բոլորովին ճիշտ է: Կոմունիստական պարտիաների ազդեցությունը աճել է ոչ միայն Արևելյան Եվրոպայում, այլ համարյա Եվրոպայի բոլոր այն երկրներում, որտեղ առաջ տիրապետում էր ֆաշիզմը (Իտալիա, Գերմանիա, Հունգարիա, Բուլղարիա, Ռումինիա, Ֆինլանդիա), կամ որտեղ տեղի է ունեցել գերմանական, իտալական կամ հունգարական օկուպացիան (Ֆրանսիա, Բելգիա, Հոլանդիա, Նորվեգիա, Դանիա, Լեհաստան, Չեխոսլովակիա, Հարավսլավիա, Հունաստան, Սովետական Միություն և այլն):

Կոմունիստների ազդեցության աճումը չի կարելի պատահականություն համարել: Դա միանգամայն օրինաչափ երևույթ է: Կոմունիստների ազդեցությունը աճել է այն պատճառով, որ Եվրոպայում ֆաշիզմի տիրապետության ծանր տարիներին կոմունիստները եղել են վստահելի, համարձակ, անձնուրաց մարտնչողներ ֆաշիստական ռեժիմի դեմ, ժողովուրդների

ազատության համար։ Պ-րն Չերչիլը իր ճառերում երբեմն հիշում է «փոքրիկ տըներից դուրս եկած հասարակ մարդկանց մասին», աղայաբար թփթփացնելով նրանց ուսը և ձևանալով նրանց բարեկամը։ Բայց այդ մարդիկ այնքան էլ հասարակ չեն, որքան առաջին հայացքից կարող է թվալ։ Դրանք, այդ «հասարակ մարդիկ», ունեն իրենց հայացքները, իրենց քաղաքականությունը և նրանք կարող են իրենց պաշտպանել։ Այդ նրանք են, միլիոնավոր «հասարակ մարդիկ», որոնք Անգլիայում քվեարկել են պ-րն Չերչիլի և նրա պարտիայի դեմ, իրենց ձայները տալով լեյբորիստներին, այդ նրանք են, միլիոնավոր «հասարակ մարդիկ», որ Եվրոպայում մեկուսացրել են ռեակցիոներներին, ֆաշիզմի հետ համագործակցելու կողմնակիցներին և գերադասել են ձախ դեմոկրատական պարտիաներին։ Այդ նրանք են, միլիոնավոր «հասարակ մարդիկ», որոնք փորձելով կոմունիստներին ֆաշիզմի դեմ մղված պայքարի ու դիմադրության կրակի մեջ,—որոշել են, որ կոմունիստները միանգամայն արժանի են ժողովրդի վստահությանը։ Այդպես է աճել կոմունիստների ազդեցությունը Եվրոպա



յում։ Այդ է պատմական զարգացման օրենքը։

Իհարկե, պ-րն Չերչիլլին դուր չի գալիս իրադարձությունների այդպիսի զարգացումը և նա տագնապ է բարձրացնում, կոչ անելով դիմել ուժի։ Բայց նրան դուր չէր գալիս նաև Ռուսաստանում Սովետական ռեժիմի երևան գալը համաշխարհային առաջին պատերազմից հետո։ Նա այն ժամանակ նույնպես տագնապ էր բարձրացնում և կազմակերպեց «14 պետությունների» ռազմական արշավանք ընդդեմ Ռուսաստանի, իրեն նպատակ դնելով ետ դարձնելու պատմության անիվը։ Բայց պատմությունը չերչիլյան ինտերվենցիայից ավելի ուժեղ դուրս եկավ և պ-րն Չերչիլլի դոն-քիշոտյան հակումները հանգեցրին այն բանին, որ նա այն ժամանակ լիակատար պարտություն կրեց։ Ես չգիտեմ, թե պ-րն Չերչիլլին և նրա բարեկամներին կհաջողվի՞ արդյոք համաշխարհային երկրորդ պատերազմից հետո կազմակերպել ռազմական նոր արշավանք ընդդեմ «Արևելյան Եվրոպայի»։ Բայց եթե այդ նրանց հաջողվի, որը քիչ հավանական է, որովհետև միլիոնավոր «հասարակ մարդիկ» կանգնած են խաղա-

ղության գործի պաշտպանության գիր-քում,— ապա կարելի է վստահությամբ ասել, որ նրանք էլ կջախջախ-վեն այնպես, ինչպես ջախջախվել են անցյալում, 26 տարի առաջ։



# ԳԱՐՆԱՆԱՑԱՆԸ ԵՎ ԱԳԻՏԱՏՈՐԸ

Զնհալ է։ Մեր համայնական դաշտերի ու լեռների վրա բացվում է հետպատերազ-մյան առաջին գարունը։

Մեր կոլխոզնիկները ու սովխոզների աշխատավորները նոր եռանդով և ոգե-վորությամբ լցված սկսում են 1946 թվի գարնան գյուղատնտեսական կամպանիա-յի աշխատանքները։

Այս գարնանացանի հաջող նախապատ-րաստումը ու անցկացումը վճռական նա-խադրյալներ կստեղծի մեր սոցիալիստա-կան դաշտերի բերքատվության աննախըն-թաց բարձրացման համար։ Իսկ դա նշա-նակում է, որ մենք կլուծենք տնտեսական քաղաքական վիթխարի նշանակություն ունեցող մի խնդիր. է՛լ ավելի բարելավել բնակչության՝ պարենամթերքներ, իսկ

արդյունաբերությանը՝ հումք մատակարարելու գործը:

Հենց այդ նպատակն է հետապնդում ՍՍՌՄ Ժողկոմսովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի «Գյուղատնտեսության զարգացման 1946 թվի պետական պլանի մասին» որոշումը:

Այդ որոշման մեջ ամենայն պարզությամբ նշվում են՝ մեր պարտիական, սովետական, կոմերիտական կազմակերպությունների, հողային օրգանների, մեր գյուղատնտեսության բնագավառի բոլոր աշխատավորների անելիքները՝ առաջիկա գարնանացանը հաջողությամբ ու բարձր ցուցանիշներով նախապատրաստելու և անցկացնելու համար:

Բնականաբար, այդ մեծ, պատվավոր ու պատասխանատու գործից հեռու մնալ չեն կարող մեր գյուղական ագիտատորները: Մեր ագիտատորների սրբազան պարտականությունն է՝ լայն բացատրական-մասսայական աշխատանք ծավալել ՍՍՌՄ Ժողկոմսովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի վերահիշյալ որոշման շուրջը, այն հաշվով, որ այդ որոշումը դառնա մեր ամեն մի գյուղական աշխատավորի սեփականությունը:

Բերքատվության բարձրացման կարև-



որագույն պայմաններից մեկը ցանքը ագրոտեխնիկայի պահանջներին համապատասխան անցկացնելն է:

Գյուղական ագիտատորը իր ամենօրյա հետևողական աշխատանքով, ագիտացիոն արվեստի համոզիչ ու բոցավառ խոսքով պետք է մեր կոլտնտեսականների սրտերում սեր ու հարգանք առաջացնի դեպի ագրոտեխնիկական կանոնները և պայքարի կոչի՝ դրանց անթերի կատարման համար:

Սակայն ագիտացիոն աշխատանքի լավ ընթացքը միայն ագիտատորներից չի կախված: Ամենալավ ու փորձված ագիտատորն էլ շատ շատով կարող է դադարել գործելուց, եթե նա զրկվի համապատասխան օգնությունից և ղեկավարությունից: Հենց այստեղ է, որ մեր պարտիական շրջկոմները և հատկապես վերջիններիս պրոպագանդայի և ագիտացիայի բաժինները պիտի դրսևորեն իրենց կազմակերպչական աշխատանքի ամբողջ կարողությունները, իրենց հմտությունն ու փորձը:

Ագիտացիոն աշխատանքի փիթխարի փորձ կուտակեցինք մենք՝ ՍՍՌՄ Գերագույն Սովետի վերջին ընտրությունների ժամանակ: Անվիճելի այն է, որ լայնորեն

օգտագործենք այդ փորձը՝ մեր ագիտա-ցիան գարնան—գյուղատնտեսական աշ-խատանքների շրջանում է՛լ ավելի ուժե-ղացնելու համար։

ՀԿ(բ)Պ Կենտկոմի կողմից վերջերս հրավիրված պարտշրջկոմների պրոպա-գանդայի և ագիտացիայի բաժնի վարիչ-ների, թերթերի խմբագիրների և պարտ-կաբինետների վարիչների խորհրդակցու-թյունը պարզեց, որ մեր կատարած մի շարք դրական աշխատանքների կողքին, ունենք բազմաթիվ թերություններ։

Ճիշտ է, որ ռեսպուբլիկայի մի շարք շրջաններում, ինչպես օրինակ Արտաշատի, Բերիայի և այլն, արդեն կոնկրետ աշխա-տանք է կատարվում գարնանացանի կա-պակցությամբ ագիտացիոն աշխատանք-ները աշխուժացնելու համար, սակայն ինչպե՞ս կարելի է հաշտվել այն փաստի հետ, երբ Թալինի շրջանի մի քանի օբեկտներ ագիտատորներով չեն ապա-հովված։ Աշտարակի, Դիլիջանի մի շարք գյուղերում զգալի չափով թուլացել է ա-գիտացիոն աշխատանքը։ Այսպիսի օրի-նակների թիվը կարելի է կրկնապատկել։ Սակայն նման վիճակը չի կարող պատիվ բերել մեզ և հետևաբար, անհրաժեշտ է



անհապաղ գործի անցնել՝ թերությունները վերացնելու համար։

Մեր կյանքը չափազանց հարուստ է ու բազմակողմանի։ Լավ, փորձված ու խելացի ագիտատորը իր ագիտացիայի համար կարող է անսպառ նյութ քաղել։ Մնում է միայն գործը կազմակերպել կա-րողանալ։

Այժմ մեր գլխավոր խնդիրը գարնանա-ցանն է։ Հենց այդ գլխավոր խնդրին էլ պիտի ծառայի մեր գյուղում կատարվող ագիտացիոն աշխատանքը։

---

## ԳԱՐՆԱՆԱՑԱՆԸ ԱՆՑԿԱՑՆԵԼ ԱԳՐՈՏԵԽՆԻԿԱՅԻ ՊԱՀԱՆՋՆԵՐԻՆ ՀԱՄԱՊԱՏԱՍԽԱՆ

Գարնանացան կուլտուրաներին հատկացված հողամասերի մշակման երկու ձև գոյություն ունի: Առաջինը, երբ այդ մշակությունը կատարվում է աշնանը, այսինքն կատարվում է ցրտահերկ, և երկրորդը, երբ հողը վարվում է գարնանը ցանքի նախօրյակին: Այս երկու ձևերից առաջինն անհամեմատ ավելի արժեքավոր է, քան երկրորդը: Հողն աշնանից վարելն ունի ոչ միայն կարևոր ագրոտեխնիկական նշանակություն, այլ նաև մեծ կազմակերպչական առավելություններ:

Ի՞նչ աշխատանքներ պետք է տանել այն հողամասերում, որոնց վարը կատարվել է 1945 թ. աշնանը և այն դեպքում, երբ որևէ պատճառով աշնանը ցրտահերկ չի կատարվել:



1. Երբ հողամասը վարվել է աշնանը, գարնանը ցանքից առաջ պետք է կատարել կամ խոր կրկնավար, կամ հողի թեթև փխրեցում: Նախացանքային խոր կրկնավար պետք է կատարել խոնավությամբ ապահովված շրջաններում և աշնանից վատորակ վար ստացած ու մոլախոտերով ուժեղ աղբոտված հողերում: Դրան հակառակ, բոլոր չորային շրջաններում աշնանից բարձրորակ վար ստացած, մոլախոտերից մաքուր ու կուլտուրական վիճակում գտնված հողերում գարնանը խոր կրկնավարի փոխարեն հողը ցանքից առաջ պետք է փխրեցնել՝ կուլտիվատորի, փոցխի կամ որևէ այլ գործիքի միջոցով: Այդ երկու դեպքում էլ հողի նախացանքային փխրեցում կատարելուց անմիջապես հետո հողամասը պետք է փոցխել, հարթել, դաշտից դուրս բերել մոլախոտերի մնացած մնացորդները և կենդանի կոճղարմատները: Շատ կարևոր է, որպեսզի հողի նախացանքային կրկնավարը կամ փխրեցումը և հացահատիկների ցանքը կատարվեն նույն օրը:

2. Աշնանից չվարած հողերի հիմնական խոր վարը պետք է կատարել գարնանը,

որքան կարելի է վաղ, դաշտ դուրս գալու առաջին իսկ օրերին: Հողի վարը ամենահիմնական աշխատանքն է: Որպեսզի վարի ժամանակ հողի մասնիկների փոշիացում չառաջանա և մյուս կողմից «ցխվար» չըստացվի, վարը պետք է կատարել միայն հողի «հասունացման» ժամանակ: Դրանից շուտ վարելու դեպքում հողը չի փշրվում և հետագայում շուռ եկած շերտերը չորանալիս տալիս են մեծ կոշտեր, որը խիստ բացասաբար է ազդում բերքատվության վրա: Քիչից ուշ վարելու դեպքում էլ տեղի է ունենում հողի մասնիկների փոշիացում, որը նույնպես բացասական հետևանքներ է ունենում:

Ժամանակից բացի, բերքատվության բարձրացման համար կարևորագույն նշանակություն ունի նաև վարի խորությունը, մանավանդ բազմամյա կոճղարմատավոր մոլախոտերով վարակված հողերում: Խոր վարի միջոցով մենք պայքարում ենք մոլախոտերի, մի շարք հիվանդությունների և վնասատուների դեմ, մեծացնում ենք հողի վարելաշերտի հզորությունը, որի հետևանքով հեշտանում է ջրի կուտակումը հողում, ուժեղանում է հողի «շնչառությունը» (գա-



զափոխանակությունը), ավելի ինտենսիվ են կատարվում բիոլոգիական պրոցեսները, որն ուժեղացնում է բույսերի թե՛ ստորերկրյա և թե՛ վերերկրյա մասերի աճն ու զարգացումը:

Վարի խորությունը տարբեր գյուղատնտեսական բույսերի համար տարբեր պիտի լինի: Ամենից խոր վար պետք է կատարել շաքարի ճակնդեղի, բամբակի, կարտոֆիլի, ծխախոտի, բանջարանոցային բույսերի և այլ տեխնիկական կուլտուրաների համար: Վարի խորությունը միատեսակ չի կարող լինել նաև որևէ կոլխոզի կամ սովխոզի բոլոր հողերի համար: Յուրաքանչյուր դեպքում հաշվի պետք է առնել հողի և կլիմայի առանձնահատկությունները, նախորդ և հաջորդ կուլտուրաների պահանջը, հողի վիճակը և այլն, և ըստ այնմ էլ որոշել վարի խորության չափը: Սակայն, Հայաստանի բոլոր գոտիներում, որպես ընդհանուր և պարտադիր կանոն, վարը պետք է կատարել 20 սանտիմետրից ոչ պակաս խորությամբ, ընդ որում հացահատիկային կուլտուրաների համար վարը պիտի կատարել 22—25 սանտիմետրից ոչ պակաս, իսկ մնացած կուլտուրաների համար 25—

30 սանտիմետր խորությամբ։ Այդպիսի խորությամբ վար չի կարելի կատարել միայն ոչ հզոր վարելաշերտ ունեցող հողերում։ Այդպիսի հողերում վարը պետք է աստիճանաբար խորացնել (տարեկան 1—2 սմ.), որպեսզի վարելաշերտի տակ ընկած «խամ» հողի մեծ մասսա միանգամից չխառնվի վարելաշերտի հողի հետ և վատացնի բույսերի զարգացման պայմանները։ Շատ խոր վար չի կարելի կատարել նաև ուժեղ թեքություն ունեցող լեռնալանջերում, որովհետև Հայաստանի լեռնային շրջանների նմանօրինակ պայմաններում խոր վարը պատճառ է դառնում հողատարման և լանջերի մերկացման։

Բոլոր դեպքերում վարը պետք է կատարել նախագութանիկ ունեցող գութանով, որը մյուս տիպի գութանների հետ համեմատած տալիս է անհամեմատ ավելի բարձրորակ և հարթ վար։

Երբ հողը վարած և պատրաստ է ցանքի համար, անմիջապես առանց ավելորդ օր ձգձգելու պետք է կատարել ցանքը։ Ցանքից առաջ սերմերը պետք է ախտահանել անպայմանորեն։ Ախտահանումը առանձնապես կարևոր է Հայաստանի պայմաններում մեծ չափով տարածված և հա-



ցահատիկներին խոշոր վնաս հասցնող քարամրիկի դեմ պայքարելու համար։

Ցանքի ձևը, նորման, ժամանակը և խորությունը սերտորեն կապված են բույսի տեսակի, մշակման նպատակի, կլիմայական և հողային պայմանների առանձնահատկությունների և այլնի հետ։

Հայաստանի լեռնային և նախալեռնային շրջաններում գարնանացան հացահատիկներից ավելի բարձր բերք է ստացվում վաղ ցանքի դեպքում, որովհետև վաղ ցանքերը ջրով ավելի լավ են ապահովված լինում, աճելու ու զարգանալու համար ունենում են ավելի երկար ժամանակաշրջան և քիչ են տուժում երաշտից և աշնանային ցրտահարությունից։ Այդ բոլորից բացի, վաղ ցանած գարնանացան հացահատիկը տալիս է հողի մեջ ավելի խոր թափանցող երկար և ուժեղ արմատացանց, որը ամառվա շոգ և չոր ամիսներին ջուր է վերցնում հողի խոր շերտերից և ապահովում բույսի նորմալ զարգացումը վեգետացիայի ամբողջ ժամանակաշրջանում։ Սակայն այս դեռ չի նշանակում, որ կարելի է կիրառել հացահատիկների գերվաղացանքը։ Որոշ ժամանակից շուտ ցանք չպետք է թույլ տալ ո՛չ հացահատիկների և ո՛չ էլ որևէ այլ

կուլտուրայի նկատմամբ, որովհետև գերվաղցանքը ունենում է միայն բացասական հետևվանք։ Շատ վաղ չի կարելի ցանել նաև այն կուլտուրաները, որոնց ծիլերը շատ զգայուն են ցրտի նկատմամբ։ Վաղ ցանվող կուլտուրաների խմբին պատկանում են՝ ցորենը, տարեկանը, վարսակը, հաճարը, գարին, վիկը, առվույտը, կորնգանը, խաշխաշը, կտավհատը և այլն։ Բոլոր կուլտուրաների նկատմամբ թեթև հողերում ցանքը պետք է կատարել հարաբերաբար ավելի շուտ, ծանր հողերում մի փոքր ուշ։ Կարճ գարուն ունեցող վայրերում և չոր նախալեռնային շրջաններում ցանքը պիտի կատարել որքան կարելի է շուտ և նվազագույն ժամանակամիջոցում։ Երկարատև գարուն և խոնավ կլիմա ունեցող շրջաններում ցանքը կարելի է դրանից մի քանի օր ուշ կատարել։ Ցանքի ժամանակի վրա մեծ ազդեցություն է ունենում նաև տեղի ռելեֆը, կուլտուրայի օգտագործման ուղղությունը, վնասատուների առկայությունը և մի շարք այլ պայմաններ, սակայն բոլոր դեպքերում էլ ցանքը պետք է կատարել ագրոկանոններով նախատեսված ժամանակից ո՛չ շուտ և ո՛չ ուշ։



Բերքատվության բարձրացման գործում վճռական նշանակություն ունի նաև ցանքի ճիշտ նորմայի սահմանումը։ Ցանքի նորման այնպես պետք է կանոնավորել, որ եղած յուրաքանչյուր բույս իր տրամադրության տակ ունենա որոշ չափի հողային տարածություն (սնման մակերես), իսկ այդ կախված է մշակվող կուլտուրայից, սորտից, հողի բերրիության աստիճանից և այլն։

Ցանքի նորման որոշելիս պետք է ելնել հետևյալ դրույթներից՝

1. Որքան սորտը ուժեղ է թփակալում, շատ ճյուղավորություններ է տալիս և փարթամ է աճում, այնքան էլ ցանքի կշռային նորման պակաս պետք է լինի։

Պակաս նորմայով ցանք պետք է կատարել նաև, երբ տվյալ սորտի սերմերը փոքր են և թեթև, իսկ սերմացուի տնտեսական պիտանիությունը՝ բարձր։

Ցանքի նորման հարաբերաբար պակաս պետք է լինի նաև չորային շրջաններում։

2. Ցանքը բարձր նորմայով պետք է կատարել մոլախոտերով ուժեղ վարակված հողերում և ուշ ցանք կատարելու դեպքում։ Շաղացանի դեպքում մոտ 20—25 կգ./հ.

ավելի սերմ պիտի ցանել, քան շարքացանի դեպքում:

Ելնելով վերը թվարկած դրույթներից, յուրաքանչյուր դեպքում պետք է սահմանել ցանքի առանձին նորմա:

Գ. ԱՂԱՋԱՆՅԱՆ
Գիտության վաստակավոր գործիչ, դոկտոր-պրոֆեսոր





# ԲԱՐՁՐ ԱՐՏԱԴՐԱՆՔԻ ՎԱՐՊԵՏՆԵՐԸ

Ռիթմիկ աղմուկով աշխատում են գործող դազգահները: Մի մարդ ֆրանսիական բանալին ձեռքին ուշիմ հետևում է դազգահների աշխատանքին: Նա հսկում է մեքենաներին և՛ հայացքով, և՛ լսողությամբ: Հարյուրավոր մեքենաների աշխատանքային ժխորում նրա փորձառու ականջը տարբերում է «հիվանդ» մեքենայի ձայնն ու իսկույն օգնության է հասնում նրան: Դա ընկ. Համբարձում Ցարմանյանն է: Բավական է մեքենայի փոքրիկ մի խափանում և նա մեքենայի մոտ է. և բավական է, որ խափանված մեքենային մոտեցավ փորձառու ենթավարպետը—իսկույն գործի կանգնի մեքենան:

Տասնհինգ տարվա փորձառությունը, նվիրվածությունը իր աշխատանքին, այն, որ անընդհատ նա սովորում է ու բարձրացնում իր գիտելիքները, ընկեր Ցարմանյանին դարձրել է իր գործին լրիվ տիրա-

պետող անփոխարինելի վարպետ։ Նրա ներկայությունը ինքնավստահ է դարձնում ջուլհակներին, ուժ է տալիս նրանց, օգնում է նրանց միշտ կատարելու իրենց առաջադրանքները։

Այս է պատճառը, որ նրա ագրեգատը իր ձեռքին պահում է միջցեխային փոխանցիկ դրոշը և առաջին կատեգորիայի պրեմիայի գյոշը։ Իր լավ աշխատանքի համար Հայրենական պատերազմի տարիներին, ընկեր Ցարմանյանն արժանացել է բարձր պարգևի— Լենինի շքանշանի։

1945 թվին ընկեր Ցարմանյանի ագրեգատը իր առաջադրանքը կատարել է 121,2 տոկոսով, պլանից դուրս երկրին տալով 209.196 մետր գործվածք։ Այս տարվա առաջին ամիսներին ևս ընկեր Ցարմանյանի ագրեգատը կատարում է իր առաջադրանքները։

... Ընկեր Ցարմանյանը ծնվել է Ջաջուռ գյուղում երկաթուղային վարպետի ընտանիքում։ Հակառակ այդ գյուղում եղած տրադիցիայի, նա երկաթուղի գնալու փոխարեն եկել է տեքստիլ արդյունաբերություն և դարձել մեր տեքստիլ արդյունաբերության նշանավոր մարդկանցից մեկը, իր գործի խսկական վարպետը։



Բարձր արտադրանքի փայլուն ցուցանիշներ է տալիս նաև ընկեր Լևոն Կարապետյանը, որը գործվածքային գործարանի արտադրական կյանքը կազմակերպող կարևոր դեմքերից մեկն է։ Նրա ողջ գիտակցական կյանքը անցել է այս գործարանում։ 1928 թվին սովորելով և ավարտելով տեքստիլ կոմբինատի ֆաբգործուսը, նա աշխատում է գործվածքային գործարանում։ Փորձված ենթավարպետը այժմ սպասարկում է 132 դազգահ։ Նա իր աշխատանքի ոճով նման է Համբարձում Ցարմանյանին։ Ընկեր Լևոն Կարապետյանի աշխատանքի առանձնահատկությունն այն է, որ նրա մոտ ոչ միայն պլանը կատարում է ողջ կոմպլեկտը ամբողջությամբ առած, այլ յուրաքանչյուր դազգահն առանձին վերցրած։

Նրա կոմպլեկտում աշխատող ջուլհակ Վասիլևա Մարֆան սիստեմատիկաբար գերակատարում է իր առաջադրանքները, միայն 1945 թվին նա պլանից դուրս 51.300 մետր գործվածք է տվել։ Ընկեր Լևոն Կարապետյանի կոմպլեկտը ամբողջությամբ վերցրած հաղթանակի տարում երկրին պլանից դուրս 174 հազար մետր գործվածք է տվել։ Սիստեմատիկաբար պլանները գերակատարելու հետևանքով բարձր

աշխատավարձ են ստանում ջուլհակները և նրանց ենթավարպետ Լևոն Կարապետյանը: Նրա միջին աշխատավարձը 1945 թվին կազմել է 4000 ռուբլուց ավելի, իսկ սեպտեմբեր ամսին նա 9805 ռուբլի աշխատավարձ է ստացել:

Լենինականի գործվածքային գործարանի կոմունիստ ենթավարպետներ ընկեր Ցարմանյանը և Կարապետյանը իրենց անձնական օրինակով ցույց են տալիս, թե ինչպիսին պետք է լինի կոմունիստն արտադրության մեջ, ինչպես նա պետք է տիրապետի իր գործի տեխնիկային և օգնի բանվորների նոր սերնդին իր գործի վարպետը դառնալու:

Բ. ՇԱՀՈՒՄՅԱՆ



## Ինչ կարդալ

1. Ի. ՍՏԱԼԻՆ.— Սովետական Միության Հայրենական Մեծ պատերազմի մասին: Ռուսերեն, հինգերորդ հրատարակություն: ОГИЗ, Госполитиздат, Москва, 1946 г.

Գիրքն ընդգրկում է ընկեր Ստալինի 1941 թվի հուլիսի 3-ից մինչև 1945 թվի սեպտեմբերի 2-ը ընկած ժամանակամիջոցի ելույթները, զեկուցումները, ճառերը, հրամանները և այլն:

2. Ի. Վ. ՍՏԱԼԻՆԻ ճառը Մոսկվա քաղաքի Ստալինյան ընտրական օկրուգի ընտրողների նախընտրական ժողովում, 1946 թվի փետրվարի 9-ին. Հայպետհրատի հրատարակություն, հայերեն լեզվով:

3. Ա. ՅԱ. ՎԻՇԻՆՍԿԻ.— Սովետական պետությունը որպես նոր տիպի պետություն. Հայպետհրատ, 1945 թ.: Գիրքը բովանդակում է ակադեմիկոս Ա. Վիշինսկու կարդացած զեկուցումը Սովետական

Միության Գիտությունների Ակադեմիայի նախագահ 1942 թվի նոյեմբերի 20-ին։

4. Զ. ԳՐԻԳՈՐՅԱՆ.— Սովետական Հայաստանը 25 տարում։ Հայպետհրատ, 1945 թ.։ Գրքում ցույց են տրված Սովետական Հայաստանի նվաճումները 25 տարում—ժողովրդական տնտեսության, լուսավորության, գիտության, գրականության ու արվեստի բնագավառներում։ Գրքի վերջին մասը նվիրված է հայ ժողովրդի մասնակցությանը Հայրենական Մեծ պատերազմին։

5. ՎԱՆԴԱ ՎԱՍԻԼԵՎՍԿԱՅԱ.—Պարզապես սեր. Гослитиздат, Москва, 1945 г. Լույս է տեսել ռուսերեն։

Լեհ գրող Վանդա Վասիլևսկայայի այս վիպակը պատկերում է սովետական մարդկանց հոգեկան վսեմությունը, նրանց նվիրվածությունը Հայրենիքին, խոր մարդկային վերաբերմունքը Հայրենական պատերազմի հաշմանդամների նկատմամբ։

6. ԱԼԵՔՍԱՆԴՐ ՖԱԴԵԵՎ.— Երիտասարդ գվարդիա. Սովետական նշանավոր արձակագիր Ֆադեևի այս վեպը լույս է տեսել Սովետական գրողների Միության օրգան «Знамя» ամսագրի 1945 թվի 2, 3, 4, 5—6, 9, 10, 11 համարներում։ Հեղինակը գեղարվեստական մեծ վարպետությամբ նկարագրել է Դոնբասի Կրասնոդոն քաղաքի «Երիտասարդ գվարդիա» կոմերիտական ընդհատակյա կազմակերպության հերոսական պայքարը գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ։



7. ԳԵՂԱՄ ՍԱՐՅԱՆ.— Հատընտիր. Պետհրատ, 1945 թ.։ Գիրքն ընդգրկում է բանաստեղծ Սարյանի ընտիր բանաստեղծությունները ու պոեմները։

---

# ՄԵՐ բառարանը

ԷՆԵՐԳԵՏԻԿԱ.— 1. Էներգիայի զանազան տեսակները կիրառելու տեխնիկա, ուժային սարքերի տեխնիկա, 2. ֆիզիկայի այն բաժինը, որ ուսումնասիրում է էներգիան (հունարեն «էներգետիկոս»՝ գործունյա, եռանդուն)։

ԷՔՍՊԵՐԻՄԵՆՏ.— 1. Փորձ. 2. գիտական փորձ (լատիներեն «էքսպերիմենտուս»՝ փորձ)։

ԼԱՈՒՐԵԱՏ.— Մրցանակի արժանացած, մրցանակավոր արվեստագետ, գիտնական, մասնագետ (լատին. «լաուրեատուս»՝ դափնեկիր, դափնեպսակի արժանացած)։

ԿԱՏԱՍՏՐՈՖ (Ա).— Ավերմունք, խոշոր աղետ, տապալվայություն, ծանր հետևանքներ ծնող իրադարձություն (հուն. «կատաստրոփե»՝ իրադարձություն, հեղաշրջում)։

ԿԱՆԴԻՑԻԱ.— 1. Որոշ չափ, որակ, նորմա, որ ըստ պայմանի պետք է ունենա սերմացուն կամ մի այլ բան, 2. պայման, պայմանավորվածություն (լատին. «կոնդիտիո»՝ պայման)։

ԿՈՆԿՈՒՐՍ.— 1. Մրցություն գիտության, արվեստի, գրականության բնագավառում սահմանված մրցանակը շահելու համար, 2. մրցություն մասնագիտական դպրոց ընդունվելու համար, 3. մրցանակաբաշխություն (լատին. «կոնկուրսուս»՝ մրցություն, ուժերի չափում)։

ՄՈՆՈՊՈԼԻՍՏԱԿԱՆ.— 1. Մենաշնորհի, բացառիկ իրավունքի հիմունքին համապատասխան, մենաշնորհի սկզբունքի վրա հիմնված, 2. արտադրելու, գնելու, վաճառելու մենաշնորհ իրավունք ունեցող (ֆրանս. «մոնոպոլ»՝ մենաշնորհ, բացառիկ իրավունք)։

ՅԱՐՈՎԻԶԱՑԻԱ.— Գարնայնացում, սերմացուն գարնանացանի համար մշակելը կամ ծլունակությունն ու աճումը արագացնելու համար որոշ մշակման ենթարկելը (ռուսերեն «յարովիզացիա»՝ գարնայնացում, գարնանային դարձնելը)։

ՌԵԶԵՐՎ.— 1. Պահուստ, պաշար, 2. պահեստի ուժ, հարկ եղած դեպքում օգտագործելի ուժ (լատին. «ռեզերվո»՝ խնայում եմ)։

ՍԵԼԵԿՑԻԱ.— Ընտրանք. գիտական ու գործնական եղանակով կենդանիների և բույսերի նոր, լավագույն տեսակներ ստանալը (լատին. «սելեկտիո»՝ ընտրում, ջոկում)։

ՍԿԵՊՏԻԿ.— Կասկածամիտ, թերահավատ, ամեն բանի մեջ կասկածող (հուն. «սկեպտիկոս»՝ քննադատող, կասկածող)։

ՍՈԽՎԵՐԵՆ.— Գերիշխան, գերագույն, պետության

ինքնուրույնությանը, անկախությանը վերաբերող (ֆրանս. «սուվերեն»՝ բարձրագույն, գերագույն)։

ՏՐԻԲՈՒՆԱ.— Բեմ, ամբիոն, որտեղից ելույթ են ունենում զեկուցողը, հռետորը և այլն (լատին. «տրիբունա»՝ բեմ, ամբիոն)։

ՏՐԻԲՈՒՆ.— 1. Հռետոր, ճարտասան, 2. ժողովրդի շահերի ներկայացուցիչ (լատին. «տրիբունուս»՝ պաշտոնյա, դատավոր)։

ՕՎԱՑԻԱ.— Ժողովրդի, ժողովականների հավանություն, բուռն ցնծության դրսևորում ծափերով, բացականչություններով (լատին. «օվացիո», ցնծություն, ուրախ բացականչություն)։

---

Պատասխանատու խմբագիր՝
Ս. ԱՐԵՇՅԱՆ

ՎՖ 00593 պատ. № 416. տիրաժ 10.000
Ստորագրված է տպագրության 21/III 1946 թ.

Հայկական ՍՍՌ ԺԿՍ-ին կից Պոլիգրաֆ և
հրատ. վարչ. № 2 տպարան, Երևան